# ՏԻԳՐԱՆ ՉՈՒՀԱՃԵԱՆ
# DIKRAN TCHOUHADJIAN

## ՄԵՆԵՐԳՆԵՐ ԵՒ ԽՄԲԵՐԳՆԵՐ
դաշնակի նուագակցութեամբ

## SOLO AND CHORAL SONGS
with Piano Accompaniment

# DIKRAN TCHOUHADJIAN

## SOLO AND CHORAL SONGS
with Piano Accompaniment

Edited by
HAIG AVAKIAN

Cairo 2005

# ՏԻԳՐԱՆ ՉՈՒԽԱՃԵԱՆ

## ՄԵՆԵՐԳՆԵՐ ԵՒ ԽՄԲԵՐԳՆԵՐ
դաշնակի նուագակցութեամբ

Խմբագրութիւն՝
ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Գահիրէ 2005

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու գամ խորին շնորհակալութիւններս յայտնելու Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութեան՝ որ ընդունեց հոգալ այս հատորի տպագրութեան ծախսերը:

Շնորհակալութիւն Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէն՝ տոքթ. Հենրիկ Բախչինեանին, երաժշտական բաժինի աւագ փոնտապահ՝ Մարինէ Մուշեղեանին, երաժշտական բաժինի վարիչ՝ Յօղիկ Բեքարեանին եւ միւս աշխատակիցներուն՝ որոնք բոլոր դիւրութիւնները ընծայեցին ինծի ուսումնասիրելու Թանգարանի Տ. Ջուհաճեանի դիւանին նիւթերը:

Շնորհակալութիւն՝ Փարիզի Նուպարեան Մատենադարանի վարիչ Յարութիւն (Ռէյմոն) Գէորգեանին, որ սիրայօժար տրամադրեց Ջուհաճեանի տպագիր երգեր:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Տիգրան Զուհաճեանի (Կ. Պոլիս, 1837 – Զմիւռնիա, 1898) բեղմնաւոր գրիչին կը պատկանին տարբեր լեզուներով յօրինուած բազմաթիւ մեներգներ եւ խմբերգներ դաշնակի նուագակցութեամբ: Ցաւօք, անոնց միայն մէկ մասը կարելի եղաւ հաւաքել: Մինչ անոնց լիակատար հաւաքագրումը եւ նոր ու լիարժէք ժողովածուի մը կազմութիւնը՝ յարմար դատեցի մատչելի մասը յանձնել տպագրութեան:

Հատորս բաժնեցի երկու մասի: Առաջին մասին մէջ ամփոփեցի հայերէն երգերը իսկ երկրորդին մէջ՝ օտար:

Հատորիս մէջ տեղ գտած հայերէն բանաստեղծութեամբ յօրինուած բոլոր երգերը նախապէս արժանացած են մէկական հրատարակութեան: Երեւանի Զարենց Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի (այսուհետեւ՝ ԶԳԱԹ) Զուհաճեանի Դիւանին մէջ (այսուհետեւ՝ ԶԴ) կը գտնուի դաշնակի նուագակցութեամբ յօրինուած ոչ մէկ հայերէն երգի ձեռագիր:

Հայերէն երգերուն մեծամասնութիւնը տպագրուած է *Քնար Հայկական*ին մէջ, Կ. Պոլիս, 1861–1862:

Հայկական երաժշտութեան պատմութեան ամենակարեւոր ու ամենաազդեցիկ երաժշտական հանդէսներէն մէկը եղած է *Քնար Հայկական*, որ կը բովանդակէր բազմաթիւ մեներգներ եւ խմբերգներ՝ դաշնակի նուագակցութեամբ: Իր գոյութիւնը մղած է հայ երաժշտահաններուն յատուկ յօրինել նոր գործեր: Սահմանադրական խաբուսիկ, բայց խիստ խանդավառ տարիներն էին՝ ազգային հրապուրիչ հեռանկարներով տոգորուած: Երգերուն մեծամասնութիւնը յօրինուած է Գաբրիէլ Երանեանի, Զուհաճեանի եւ հայերուն մտերիմ իտալացի երաժշտահան Կ. Ֆոսքինիի կողմէ, որոնք դիմած են ժամանակակից առաջաւոր գրողներու՝ Մկրտիչ Պէշիկթաշլեանի, Սրապիոն Հէքիմեանի, Մատթէոս Մամուրեանի, Նահապետ Ռուսինեանի, Գարեգին Ջափրաստճեանի, Գէորգ Ապտուլլահի եւ այլոց բանաստեղծութիւններուն: Տեղ գտած են նաեւ երգեր՝ որոնց հեղինակները յիշատակուած չեն եւ այս առումով կարիք ունին երաժշտագիտական հետազօտութեան: Քանի մը երգի երաժշտութիւնն ալ եւրոպականի պատշաճեցումն է հայկական բառերու: Հանդէսի Ա. շրջանին մէջ կը հրատարակուի նաեւ «Համառօտ հայկական երաժըշտութիւն»՝ գրուած Համբարձում Չէրչեանի կողմէ, եւ «Համառօտ եւրոպական երաժշտութիւն»՝ անստորագիր: Առաջինն այսօր ունի գիտական կարեւորութիւն, քանզի մէկ կողմէն կը ներկայացնէ Հայ Արդի Ձայնագրութեան 1860-ականներուն ընդունուած համակարգը, միւս կողմէն կը հանդիսանայ մեծ երաժիշտ Չէրչեանի միակ տեսական ուսումնասիրութիւնը:

*Քնար Հայկական* ունեցած է երկու յաջորդական շրջաններ՝ իւրաքանչիւրը վեցամսեայ տեւողութեամբ:

Ա. շրջանը եղած է կիսամսեայ, որմէ՝ ինչպէս նախատեսուած էր, լոյս տեսած է 12 թիւ, թիւ 1-ը՝ 1861 Սեպտեմբեր 1-ին, թիւ 12-ը՝ 1862 Մարտ 5-ին: Բոլոր թիւերուն վրայ գրուած է՝ «Տնօրէն եւ հեղինակք՝ Գ. Յ. Երանեան, Ն. Ս. Թաշճեան»: Արդի ըմբռնումով՝ Գաբրիէլ Երանեան եւ Նիկողայոս Թաշճեան եղած են հանդէսին արտօնատէրերն ու խմբագիրները: Զուհաճեան առաջին անգամ ելոյթ կ’ունենայ թիւ 7-ին մէջ՝ 1 Դեկտեմբեր 1861, հրատարակելով Մանաս Էֆէնտիի *Առ սէր իմ Հայաստանին* մշակումը, խօսք՝ Ս. Փափազեանց: Զուհաճեանի առաջին ինքնուրոյն գործը կ’ըլլայ *Քնար Հայկականին* ձօնուած մեներգ մը՝ *Ողջ լեր քնար*, խօսք՝ Նշան Ջօհրապեան (թիւ 8, 15 Դեկտեմբեր 1861), որուն կը յաջորդէ *Երգ ի միութիւն Հայոց*, խօսք՝ Գէորգ Ապտուլլահ (թիւ 12, 5 Մարտ 1862):

Զուհաճեան աշխոյժ համագործակցութիւն եւ մասնակցութիւն կ’ունենայ հանդէսի Բ. շրջանին:

Ա. շրջանի աւարտէն ետք, կը հիմնուի Երաժշտական Ընկերութիւն մը՝ «այդ թերթին նպաստելու եւ հրատարակութիւնը ապահովելու համար»[1]:

1862 Ապրիլ 4-ին, Զուհաճեանի եւ Երանեանի միացեալ ստորագրութեամբ, *Մասիս*ի մէջ կը հրատարակուի հետեւեալ ծանուցումը.

«Երաժշտութիւնը Ազգիս մէջ ձայնագրութեամբ զարգացնելու նպատակաւ նոր Ընկերութիւն մը կազմուեցաւ մեծապատիւ անձանց եւ ազգասէր ուսումնականաց խնամօքը. ուստի յարգի բաժանորդաց կը ծանուցուի որ Քնար

Հայկականին Բ. շրջանը պիտի հրատարակուի յառաջիկայ Ապրիլ ամսոյս մէջ ամենայն բարեկարգութեամբ, եւ Երաժշտական Ընկերութեան կանոններն ալ լրագրաց միջոցաւ հասարակութեան պիտի հաղորդուին.

Տիգրան Զուհաճեան

Գաբրիէլ Երանեան»[2]:

Քանի մը օր ետք, *Մասիս* կը տեղեկացնէ Ընկերութեան ծրագիրը. «Ազգային երգեր, թատերական նուագներ ու պարերգեր հրատարակել. ընտիր նուագածուներ յառաջ բերել եւ երաժշտութեան ճաշակը առհասարակ բոլոր Հայոց մէջ ծաւալել»[3]:

*Քնար Հայկական*ին մէջ տպագրուած անուններու երկար ցուցակ մը կը վկայէ հանդէսին եւ ընկերութեան իսկական ծաւալը: Ցուցակը կը տեղեկացնէ Երաժշտական Ընկերութեան հիմնադիրներուն անունները. Գրիգոր էֆէնտի Աղաթօն, Գրիգոր էֆէնտի Օտեան, Գրիգոր Խուրտաճեան, Ճանիկ Պէյլիքճեան, Մարտիրոս Միւհէնտիսեան, Յակոբ էֆէնտի Քէօչէեան, Յակոբ Պուրունսուզեան, Յովհաննէս Կէլկէլեան, Յովակիմ Նէվրուզեան, Յարութիւն Փափազեան, Նահապետ էֆէնտի Ռուսինեան, Պօղոս էֆէնտի Քէօչէեան, Սերովբէ Թագւորեան, Փիլիպպոս Կէլկէլեան: Իսկ Երաժշտական Ընկերութեան ուսումնական յանձնաժողովը կազմուած էր հետեւեալ անձերէն. Թորոս Նազարեան, Մատթէոս Մամուրեան, Մկրտիչ Պէշիկթաշլեան, Յակոբ Ոսկանեան, Սրապ Հէքիմեան, Ստեփան Փափազեան: 2-5 անդամներէ կազմուած Երաժշտական Մասնաժողովներ կը կազմուին Բերա, Խասգիւղ, Սամաթիա, Իւսկիւտար Եէնիմահալլէ, Իւսկիւտար Սէլամսըզ, Օրթագիւղ, Պալատ, Պէշիքթաշ, Եէնիգաբու եւ Էյիպ, որոնք կը տնօրինէին Երաժշտական Ընկերութեան տեղւոյն բաժանորդագրութիւնները եւ բաշխումը: Իսկ Երաժշտական Ընկերութիւնը ունեցած է մեծաքանակ բաժանորդներ՝ շուրջ 290, որոնցմէ 70-ը Բերայի մէջ, 31-ը՝ Խասգիւղ, 25-ը՝ Սամաթիա, 36-ը՝ Իւսկիւտար Եէնիմահալլէ, 30-ը՝ Իւսկիւտար Սէլամսըզ, 26-ը՝ Օրթագիւղ, 19-ը՝ Պալատ, աւելի քան 2՝ Պէշիքթաշ (նշուած է՝ որ բոլոր անունները չեն յիշատակուած), 41-ը՝ Եէնիգաբու եւ 6-ը՝ Էյիպ: Զայնանիշերով կատարուած հրատարակութեան մը համար բաժանորդներու այս քանակը կ'արտացոլէ պոլսահայ երաժշտական-մտաւորական կեանքին եռանդուն իրավիճակը:

Հանդէսի Բ. շրջանի թիւ 1-ը (30 Ապրիլ 1862) կը կրէ հետեւեալ յայտարարութիւնը.

«*Քնար Հայկական*ին վեցամսեայ բաժանորդագրութեան գինն է վաթսուն ղրուշ:

«Բաժանորդաց համար ձայնագրութեամբ դասախօսութիւնը ձրի է:

«*Քնար Հայկական*ը սոյն քառածալ դիրքով անգամ մը պիտի հրատարակուի ամիսը:

«Դուրս երթալու ճամբուն ծախսը առնողին վրայ է:»

Զայնագրութիւնը հաւանաբար կը վերաբերի եւրոպական նոթագրութեան, այլապէս պիտի չեշտէին «հայկական» ձայնագրութեան հանգամանքը:

Թիւ 5-ին մէջ կ'ընդլայնուի այս յայտարարութիւնը՝ հետաքրքրական մանրամասնութիւններ հաղորդելով դասախօսութիւններու վայրերուն եւ քանակին մասին.

«*Քնար Հայկական*ը սոյն քառածալ դիրքով ամիսը անգամ մը պիտի հրատարակուի ազգային ընտիր երգերով եւ պարերգներով:

«*Քնար*իս շրջանը վեցամսեայ է:

«Գին բաժանորդագրութեան երկու քսաննոց մէճիտիէ կանխիկ:

«Բաժանորդաց համար ձայնագրութեամբ դասախօսութիւնը ձրի է հետեւեալ թաղերուն մէջ.

«Խասգիւղ Ազգային Թատրոն հինգշաբթի երեկոյ:

«Սամաթիա Սահակեան վարժարան կիրակի օր ժամը 6-էն մինչեւ 8:

«Իւսկիւտար Ազգային Ճեմարան կիրակի օր ժամը 3-էն մինչեւ 5:

«Միջագիւղ Թարգմանչաց վարժարան շաբաթ երեկոյ:

«Պալատ Հրեշտակապետ եկեղեցւոյ վարժարանը կիրակի առաւօտ ժամը 3-էն մինչեւ 5:

«Եէնի Գաբու վարժարան կիրակի ժամը 8-էն մինչեւ 11:

«Էյիպ Աստուածածնայ եկեղեցւոյ վարժարանը ուրբաթ առաւօտներ:

«Որ եւ իցէ մէկն եթէ ազգային ընտիր երգ մը պատրաստած ըլլայ կրնայ երաժշտական ուսումնական յանձնաժողովոյն դիմել. նոյնը եթէ արժան դատուի անոր եղանակը կը պատրաստուի եւ *Քնար*իս մէջ կը տպուի:

«Ստորագրութեան տեղերն են ամէն թաղոյս մէջ որոշեալ մասնաժողովք. չուկայի ստորագրութեան տեղերն են Մէրճանը գրավաճառ Պ. Յարութիւնին սենեակը, եւ Վէզիր

խանը մուզիքաճի Պ. Կարապետին սեննակը:

«*Քնար*իս Բ. շրջանին չորրորդ թերթէն սկսեալ որ եւ իցէ մէկը կարող չի պիտի ըլլայ թերթիս մէջէն երգերը առնել եւ ուրիշ տեղ տպել տալ:

«Դուրս երթալիքներուն ճամբու ծախսը առնողին վրայ է:»

Ասիկա ցոյց կու տայ՝ թէ ձայնագրութեան դասաւանդումի որքան լայն գործունէութիւն մը կը ծաւալէր Քնար Հայկական Ընկերութիւնը:

Բ. շրջանը նոյնպէս ծրագրուած էր վեցամսեայ տեւողութեան համար՝ լոյս տեսնելով ամիսը մէկ անգամ: Այսինքն՝ կը հրատարակուի 6 թիւ, որոնցմէ թիւ 1-ը լոյս կը տեսնէ 1862 Ապրիլ 30-ին: Ն. Թաշճեան կը դադրի խմբագրական կազմին մէջ մաս կազմելէ, որուն կը փոխարինէ Զուհաճեան: Թիւ 1 (30 Ապրիլ 1862) – թիւ 3 (31 Յունիս 1862) կը կրեն հետեւեալ նշումը. «Հեղինակք՝ Տիգրան Զուխաճեան եւ Գաբրիէլ Երանեան», իսկ թիւ 4 (31 Յուլիս 1862) – թիւ 5 (31 Օգոստոս 1862)՝ «Քնարիս ընկերք՝ Կ. Ֆ. Ֆօսքինի եւ Տիգրան Զուխաճեան, հեղինակ՝ Գաբրիէլ Յ. Երանեան»: Հինգ թիւերու տիտղոսաթերթերուն վրայ մեծ տառերով արձանագրուած է՝ «Երաժշտական Ընկերութիւն Քնար Հայկական, ընդ պաշտպանութեամբ Հիմնադրաց Ժողովոյն»:

Բ. շրջանին մէջ Զուհաճեան կը հրատարակէ իր յօրինած բազմաթիւ երգերը՝ նոր որակ տալով հանդէսի մասնագիտացուածութեան (professionalism) եւ յօրինողական-արհեստավարժական (technical) հմտութեան: Այս երգերն են՝ *Երգ ուրախութեան*, խօսք՝ Մ. Երանեան, *Պանդուխտն առ լուսին*, խօսք՝ Սրապիոն Հէքիմեան (թիւ 1, 30 Ապրիլ 1862), *Գարուն*, խօսք՝ Մկրտիչ Պէշիկթաշլեան, *Առ մայրենի լեզու*, երաժշտութեան հեղինակակից՝ Գ. Երանեան, խօսք՝ Ազգային (թիւ 2, 30 Մայիս 1862), *Երգ թատերական. Օն մեր նախնի*, խօսք՝ Գարեգին Զափրաստճեան (թիւ 3, 31 Յունիս 1862), *Մայր առ որորան*, խօսք՝ Մատթէոս Մամուրեան (թիւ 5, 31 Օգոստոս 1862):

1862 Հոկտեմբեր 13-ին վաղահասօրէն կը մահանայ Երանեան: Ըստ *Քնար Հայկականի* տիտղոսաթերթի տուեալներուն՝ թիւ 6-ը (Բ. շրջանի նախատեսուած վերջին թիւը) լոյս կը տեսնէ 1862 Սեպտեմբերին: Բայց տիտղոսաթերթի գրութիւնը փոխուած է. «Երաժշտական Ընկերութիւն Քնար Հայկական որոյ եղեւ Գաբրիէլ Երանեան հիմնադիր եւ հեղինակ»: Զուհաճեանի եւ Ֆոսքինիի անունները չկան, իսկ բովանդակութիւնն է՝ *Արմենուհի առ քնար*, խօսք՝ Մ. Ե., երաժշտութիւն՝ Եւրոպական եւ *Առ արփին Հայաստանի*, խօսք՝ Մ. Տատուրեան, երաժշտութիւն՝ Գ. Երանեան: Առանց մտնելու մանրամասնութիւններու մէջ, «եղեւ» բայի անցեալ եղանակով գործածութիւնը կ'ենթադրէ արդէն վերջացած գործողութիւն մը: Կրնայ ըլլալ՝ որ յարգելու համար իրենց գործընկերոջ սիրելի յիշատակը, Զուհաճեան եւ Ֆոսքինի հրաժարած են յիշատակել իրենց անունները: Անոնք հանդէսին ամենավերջին թիւը հրատարակած են Երանեանի մահէն ետք, բայց պահպանելու համար թիւերուն յաջորդականութիւնը՝ թուականը նշած Սեպտեմբեր: Յիշատակութեան արժանի է նաեւ մանրամասնութիւն մը: Բ. շրջանի բոլոր թիւերը կը կրեն ամսաթիւը եւ ամիսը (օրինակ՝ 31 Օգոստոս), բացի թիւ 6-էն՝ ուր նշուած է միայն ամիսը՝ Սեպտեմբեր, հաւանաբար նախատեսուած ժամանակին լոյս տեսած չըլլալուն պատճառով: Այս տեսակէտները հաստատող փաստեր, անշուշտ, տակաւին կը պակսին: Ինչ որ ալ ըլլայ պարագան, Երանեանի վախճանումով եւ *Քնար Հայկական* հանդէսի Բ. շրջանի աւարտով, վերջակէտ կը դրուի հանդէսին եւ Երաժշտական Ընկերութեան, որոնք այնքան մեծ հետաքրքրութիւն առթած էին պոլսահայ շրջանակներու մէջ:

*Քնար Հայկական*ին մէջ տպագրուածները կը ներկայացնեն Զուհաճեանի սկզբնական շրջանի երգերը՝ որոնք տոգորուած են հայրենական սիրոյ զգացումներով, լիցքաւորուած ազգային յուզումներով: Այս ձգտումը պիտի շարունակուէր մինչեւ 1860-ականներուն վերջը՝ որուն գագաթնակէտը պիտի հանդիսանար *Արշակ Բ.* հրաշագեղ օփերան: 1870-ականներէն սկսեալ, օսմանեան կայսրութեան արագընթաց անկումը ի յայտ բերաւ ներքին բռնապետութեան սաստկացում եւ ազգային փոքրամասնութիւններու նկատմամբ անհանդուրժողականութիւն: Ասիկա կ'արտացոլուի Զուհաճեանի այդ տարիներու ստեղծագործութիւններուն մէջ, որոնք կը դադրին ազգային նիւթեր բովանդակելէ: Երգի բնագաւառին մէջ, ան կը դիմէ «անվնաս» նիւթերու, ինչպէս Վիքթոր Հիւկոյի *Լոռայ*ի հայերէն թարգմանութիւնը (տպագրուած Եղիա Տնտեսեանի *Նուագք Հայկականք* երաժշտական հանդէսին մէջ, Կ. Պոլիս, 1880), ինչպէս նաեւ օտար լեզուներով

երգերու։ Այս ուղղութենէն փոքր «շեղում» մը կարելի է նկատել 1884-ին յօրինած Մահանուագը՝ Պոլսոյ Պատրիարք Ներսէս Վարժապետեանի վախճանումին առիթով։ Թէեւ ազգային գաղափարախօսական ոչ մէկ նշոյլ կայ բառերուն մէջ, սակայն օսմանեան յետադիմութեան այդ տարիներուն՝ այնքան ալ բաղձալի չէր ժողովրդական ղեկավարի մը ներբողումը։ Բայց, պէտք է չեշտել, որ Ներսէս Վարժապետեանի յուղարկաւորութիւնը ունեցաւ ժողովրդական լայն ու ինքնաբուխ մասնակցութիւն։ Ան առթեց ազգային թաքուն յոյզեր՝ որոնց ակնյայտօրէն մասնակից դարձաւ Զուհաճեան։

Հատորիս երկրորդ մասը օտար լեզուներով երգերն են՝ *Laura*, մեներգ ֆրանսերէն լեզուով, խօսք՝ Վիքթոր Հիւկօ (տպագրուած յետ մահու՝ 1914-ին), Ave Maria՝ լատիներէն աւանդական բնագիրով (երկիցս տպագրուած՝ 1883-ին եւ 1914-ին), *Mélodie* խորագիրով երկու յունարէն մեներգներ՝ գրուած լատիներէն տառերով, երկուքն ալ անտիպ, եւ թուրքերէն անտիպ խմբերգ մը։

Ընդհանրապէս, տպագիր թէ ձեռագիր քանի մը երգ կը յարուցանեն հեղինակային պատկանելութեան հարցեր։ *Քնար հայկական*ին մէջ կը գտնուի չորս երգ՝ որոնց երաժշտահանները նշուած չեն, այլ պարզապէս գրուած՝ «Եղանակ հանդէսին»։ Անոնք են՝ *Երգ ուրախութեան* (Բ. շրջան, թիւ 1, 30 Ապրիլ 1862), *Պանդուխտն առ լուսին* (նոյն տեղը), *Գարուն* (Բ. շրջան, թիւ 2, 30 Մայիս 1862) եւ *Առ մայրենի լեզու* (նոյն տեղը)։ Ինչպէս գրուած է *Քնար հայկական*ի տիտղոսաթերթին վրայ, հանդէսի այս երկու թիւերուն խմբագիր-հեղինակներն են Զուհաճեան եւ Գ. Երանեան։ Հետեւաբար, յիշեալ չորս երգերը կամ համատեղ աշխատանքի արդիւնք են եւ կամ երկու երաժշտահաններէն մէկուն հեղինակութիւնը։

1909-ին լոյս տեսած *Երգարան*ին մէջ կը հրատարակուի *Երգ ուրախութեան*ի մեղեդին՝ իբրեւ Զուհաճեանի հեղինակութիւն[4]։ Երաժշտութեան ներքին յուզականութիւնը եւ կենսախինդ թափը բաւական մօտ է *Արշակ Բ.*ի «Կենաց տեսարան»-ին[5]։

*Գարունը* աւանդութեան ուժով հասած է իբրեւ Զուհաճեանի ստեղծագործութիւն։ Բոլոր երգարաններն աներկբայօրէն զայն վերագրած են Զուհաճեանին, ինչպէս՝ *Ձայնագրուած հայկական երգարան* (1920-ականներ)[6], *Գանձարան հայկական երգերու* (1930-ականներ)[7], *Ձայնագրեալ 74 հատ ազգային հատընտիր երգեր* (1946)[8], *Ոսկեփորիկ* (1982)[9], *Երգարան* (1993)[10], *Երգարան հայերգ* (1996)[11]։ 1919-ին Վարդան Սարգսեան զայն կը հրատարակէ իր նոր դաշնաւորումով, միշտ եղանակը վերագրելով Զուհաճեանին[12]։ Անշուշտ, երգարանները միշտ չէ որ կարելի է ընդունիլ իբրեւ գիտականօրէն արժանահաւատ աղբիւրներ, քանզի յաճախ մէկ երգարանի մը յիշատակածը մեքենայաբար կը վերարտադրուէր յաջորդ երգարանին մէջ։ Բայց *Գարուն*ի մեղեդային նրբայարդար թաւալքը, դաշնակումային (harmonic) թարմութիւնը կրնային միայն Զուհաճեանի գրիչին արդիւնքն ըլլալ։

*Պանդուխտն առ լուսին* եւ *Առ մայրենի լեզու* երգերուն մասին հեղինակային յիշատակութիւններ չկան երգարաններու մէջ կամ այլուր։

*Առ մայրենի լեզու*ին մասին Ն. Թահմիզեան կը գրէ՝ թէ երաժշտութիւնը յօրինած է Տ. Զուհաճեան իսկ Գ. Երանեան զայն խմբագրելով հրատարակած է *Քնար հայկական*ին մէջ[13]։ Յարգելի երաժշտագէտը փաստագրական կամ գեղարուեստական ոչ մէկ դրոյթ կը նշէ իր տեսակէտը հիմնաւորելու համար, հետեւաբար այս կարծիքը կը մնայ իր անձնական համոզումին արդիւնքը։ Կարելի է նաեւ այլ ենթադրութիւններ ընել եւ յատկապէս զանոնք համեմատել Երանեանի վաւերացուած ստեղծագործութիւններու հետ, ինչպէս՝ *Արիք հայկազունք*, խօսք՝ Յարութիւն Սրվաձեան (*Քնար հայկական*, թիւ 1, Սեպտեմբեր 1861), *Հայաստան* (*Քնար հայկական*, թիւ 1, Սեպտեմբեր 1861) եւ *Առ արփին Հայաստանի* (*Քնար հայկական*, թիւ 6, Սեպտեմբեր 1862)։ Առաջին երկուքը՝ *Պանդուխտն առ լուսին* եւ *Առ մայրենի լեզու*ին համեմատութեամբ, ունին դաշնակումայիննուագակցային կաշկանդումներ։ Երրորդը՝ շատ աւելի ազատ ու սլացիկ է նուագակցութեան տեսանկիւնէն։ Բայց երեքին մեղեդիներն ալ արտայայտիչ են, յուզական եւ սրտագրեցիկ։ Չմոռնանք նաեւ, որ երրորդը՝ *Առ արփին Հայաստանի*, կը տպագրուի Երանեանի վաղահաս մահէն անմիջապէս ետք։ Հետեւաբար, կրնայ ըլլալ Զուհաճեան միջամտած ըլլայ դաշնակի նուագամասին մէջ, եւ յարգած ըլլալու համար գործընկերոջ յիշատակը՝ չէ ցանկացած յիշատակել իր անունը։ Գալով *Պանդուխտն առ լուսին* եւ *Առ մայրենի լեզու*ի եղանակներուն, անոնք իրենց կշռութային դարձուածքներով եւ մեղեդային ծանրաշարժութեամբ կրնան ընդ-

հանրութիւններ ունենալ Երանեանի երեք վաւերական գործերուն հետ: Բայց, առ նուազն դաշնակի նուագակցութեան ճկունութեան, դաշնակումային հարստութեան եւ հիւսուածքային նրբաքանդակութեան առումներով, անոնք կը յարին Զուհաճեանի լեզուամտածողութեան: Ուղղակի փաստերու բացակայութեան պատճառով՝ այս բոլորը կը մնան վարկածներ: Հետեւաբար, *Պանդուխտն առ լուսին*ին եւ *Առ մայրենի լեզու*ին համար Զուհաճեան եւ Երանեան ընդունեցի իբրեւ հեղինակակիցներ:

*Mélodie* թիւ 2-ը յունարէն խօսքերով անտիպ մեներգ մըն է, գրուած Զուհաճեանի ձեռագիրով: Ան՝ ինչպէս երաժշտահանի ինքնագիր բազմաթիւ այլ գործեր, չի կրեր հեղինակին անունը կամ ստորագրութիւնը: Բայց երաժըշտութեան վառ քնարականութիւնը, մեղեդային գեղեցկահիւսութիւնը եւ դաշնակումային թարմութիւնը երաժշտութիւնը կը դարձնեն էապէս զուհաճեանական:

Կարգ մը տպագիր թէ ձեռագիր երգերու համար չէ նշուած անոնց մեներգ թէ խմբերգ ըլլալը: Յատկապէս մեներգներուն պարագային, անորոշ կը մնայ թէ անոնք իգական կամ արական որ ձայնի համար նախատեսուած են: Այս բոլոր հարցերը կրնային բնական կերպով լուծուած ըլլալ՝ եթէ մեր կատարողները երգերը ընդգրկած ըլլային իրենց մնայուն նուագացանկերուն մէջ: Տուեալ երգերուն կատարողական գործադրութեան (performance practice) հասունացումին զուգահեռ լուծուած կրնային ըլլալ նաեւ բազմաթիւ անորոշութիւններ: Միայն նշեմ՝ որ ընդհանրապէս Զուհաճեան գործածած է միջին ու ցած ձայնամասեր, քանի որ միշտ նկատի ունէր ոչ-մասնագէտ երգիչներ: Ստորեւ՝ իւրաքանչիւր երգի կապակցութեամբ քննարկելով հանդերձ այս հարցերը, վերջնական լուծումները, արդարեւ, կը թողում կատարողներուն:

Նշեմ՝ որ ԶԳԱԹ ԶԴ նախապէս մշակուած ու թուագրուած էր Տանիա Կաֆլանեանի կողմէ: 1990-ականներուն, դիւանը կը վերամշակուի Յօդիկ Բեքարեանի կողմէ, որ նիւթերուն կու տայ այլ թուագրումներ: Ստորեւ, դիւանի նիւթերուն թուագրումները նախ նշանակած եմ նոր, ներկայ տարբերակով (Բեքարեանի) եւ ապա՝ փակագիծերու մէջ, աւելցուցած նոյն նիւթին հին թուագրումը (Կաֆլանեանի): Օրինակ՝ ԶԴ թիւ 100 (ՀԹ 62) կը նշանակէ Զուհաճեանի Դիւանի այժմեան թիւ 100-ը, որ հին թուագրութեամբ (ՀԹ) եղած էր 62:

## ՄԵՆԵՐԳՆԵՐ ԵՒ ԽՄԲԵՐԳՆԵՐ ՀԱՅԵՐԷՆ ԽՕՍՔԵՐՈՎ

### ՈՂՋ ԼԵՐ ՔՆԱՐ

Խօսք՝ Նշան Զօհրապեան

Տպագրուած է *Քնար Հայկական*ին մէջ, Կ. Պոլիս, 15 Դեկտեմբեր 1861, Ա. շրջան, թիւ 8:

Նշուած չէ մեներգ թէ խմբերգ ըլլալը: Գրուած է դաշնակի հնգագիծի վրայ, ուր բառերը տեղադրուած են հնգագիծերուն մէջտեղը (հրատարակութեանս մէջ պահպանեցի այս գրելակերպը): Աջ ձեռքը ամբողջութեամբ միաձայն է: Մեղեդիին զարդանախշերը, ճկուն ոստում-ամբարձումները կը խօսին յօգուտ մեներգին:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ԶԳԱԹ, Մարգարիտ Բաբայեանի Դիւան, թիւ 581ա:

### Բ. ԵՐԳ ԹԱՏԵՐԱԿԱՆ. Ի ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Խօսք՝ Գէորգ Ապտուլլահ

Տպագրուած է *Քնար Հայկական*ին մէջ, Կ. Պոլիս, 5 Մարտ 1862, Ա. շրջան, թիւ 12: Ներկայացուած է իբրեւ «Բ. երգ թատերական»: Հաւանաբար՝ ինչպէս *Ոն մեր նախնիք*, թատերական երգ մըն է ան:

Նշուած չէ մեներգ թէ խմբերգ ըլլալը: Ինչպէս *Ողջ լեր քնարը*՝ գրուած է դաշնակի հնգագիծի վրայ, ուր բառերը տեղադրուած են հնգագիծերուն մէջտեղը (հրատարակութեանս մէջ պահպանեցի այս գրելակերպը): Դաշնակի աջ ձեռքը՝ որ միաժամանակ կը բովանդակէ նաեւ երգչային մեղեդին, յաճախ ունի երկձայն հիւսուածք: Այս երկրորդ ձայնը երգի՞ համար նախատեսուած է թէ դաշնակին կողմէ նուագւելու: Եթէ երգի համար նախատեսուած է, ուրեմն այստեղ ունինք երկձայն երգչախումբ, հաւանաբար սոփրանօ-ալթօ կազմի համար: Երգն իր խիզախ բացագանչութիւններով եւ կշռութականութեամբ կը մօտենայ խմբերգային հնչականութեան: Բայց կրնայ գեղեցիկ հնչել նաեւ եթէ հատածներ 8-21 («Ահա հրեշ-

տակ») երգուին իբրեւ մեներգ, հատածներ 23-50 («Հզօր պատգամ»)՝ խմբերգ, հատածներ 57-72 («Արիք հայկազունք»)՝ մեներգ եւ հատածներ 76-99 («Կեցցեն յաւերժ»)՝ խմբերգ:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ԶԳԱԹ, Մարգարիտ Բաբայեանի Դիւան, թիւ 581ա: Երկրորդ թերթին վարը պատռած է, որ պէտք է բովանդակէր հատածներ 50-52 եւ 93-96: Հատածներ 93-96-ը դիւրին է վերականգնել՝ քանի որ անոնք կը հանդիսանան հատածներ 85-87-ին կրկնութիւնը: Դժուարութիւնը հատածներ 50-52-ն են: Զանոնք պայմանականօրէն լրացուցի իմ կողմէս, մինչեւ կը յայտնաբերուի երգին ամբողջական օրինակը:

## ԵՐԳ ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ

Խօսք՝ Մ. Երանեան

Տպագրուած է *Քնար Հայկական*ին մէջ, Կ. Պոլիս, 30 Ապրիլ 1862, Բ. շրջան, թիւ 1:

Նշուած չէ մեներգ թէ խմբերգ ըլլալը: Կը թուի պատշաճիլ թէ՛ իբրեւ մեներգ եւ թէ՛ իբրեւ խմբերգ:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ԶԳԱԹ, Մարգարիտ Բաբայեանի Դիւան, թիւ 581ա եւ Երգարաններու Դիւան, թիւ 75:

## ՊԱՆԴՈՒԽՏՆ ԱՌ ԼՈՒՍԻՆ

Խօսք՝ Սրապիոն Հէքիմեան

Երաժշտութեան հեղինակակից՝ Գաբրիէլ Երանեան

Տպագրուած է *Քնար Հայկական*ին մէջ, Կ. Պոլիս, 30 Ապրիլ 1862, Բ. շրջան, թիւ 1:

Նշուած չէ մեներգ թէ խմբերգ ըլլալը: Ան հաստատապէս մեներգ է, քանի որ երգչային դերամասը կ՚աւարտի մեներգային երգեցողութեան բնորոշ քատենցայով:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ԶԳԱԹ, Մարգարիտ Բաբայեանի Դիւան, թիւ 581ա եւ Երգարաններու Դիւան, թիւ 75:

## ԳԱՐՈՒՆ

Խօսք՝ Մկրտիչ Պէշիկթաշլեան

Տպագրուած է *Քնար Հայկական*ին մէջ, Կ. Պոլիս, 30 Մայիս 1862, Բ. շրջան, թիւ 2:

Չուհաճեանի ամենասիրուած ու ամենատարածուած երգն է:

Թէեւ մեներգ-խմբերգ ըլլալը նշուած չէ, բայց շատոնց է արդէն կատարողական գործադրութեան (performance practice) կողմէ արդարացիօրէն ընդունուած է իբրեւ մեներգ:

Անոր միաձայն մեղեդին տեղ գտած է բազմաթիւ երգարաններու մէջ[14]: Երգարաններուն մէջ տեղ գտած միաձայն եղանակները իրարմէ կը տարբերին նախահարուկներու (acciaccaturas), զարդանախշերու (ornaments) եւ կարգ մը ձայնանիշերու նոթագրութեան, ինչպէս նաեւ ձայնակայքի (tonality) տեսանկիւնէն: Իսկ անոնք բոլորն ալ նոյն բնոյթի տարբերութիւններ ունին *Քնար Հայկական*ին մէջ տպագրուած վաւերական միակ բնագիրէն: Կը նշանակէ՝ որ *Գարուն*ի երաժշտութիւնը այնքան սիրուած էր հանրութեան կողմէ, որ բանաւոր կերպով փոխանցուած է սերունդէ սերունդ, ենթարկուած բանաւոր աւանդութեան բնական օրէնքներուն եւ յետագային վերանոթագրուած տարբեր անձերու երգեցողութիւններէն:

Յարութիւն Սինանեան նոյնիսկ զայն մշակած է իբրեւ հայկական ժողովրդական երգ՝ առանց տեղեակ ըլլալու հեղինակին մասին[15], որ աւելի եւս կը հաստատէ երգին վայելած ժողովրդականութիւնը:

Վարդան Սարգսեան եւս կատարած է վերամշակում մը դաշնակի նուագակցութեամբ, յիշատակելով Չուհաճեանի անունը իբրեւ հեղինակ[16]: Բայց մեղեդին հաստատապէս չէ վերցուած *Քնար Հայկական*էն, քանի որ ան նկատելի տարբերութիւններ ունի բնագիրէն:

Կոմիտաս Վարդապետ զայն քանիցս մշակած է քառաձայն երգչախումբի համար, առանց հեղինակային նշումի[17]:

Նիկողոս Թահմիզեան՝ Չուհաճեանի մենագրութեան մէջ, կը հրատարակէ մեներգն ամբողջութեամբ՝ դաշնակի նուագակցութեամբ հանդերձ[18]: Թահմիզեան զայն կը ներկայացնէ իբրեւ Չուհաճեանի վաւերական բնօրինակ, առանց նշելու, սակայն, իր աղբիւրը: Իրականութեան մէջ, դաշնակի նուագակցութիւնը ճիշդ Վարդան Սարգսեանի դաշնակումն է, բայց մեղեդին ունի նկատելի տարբերութիւններ թէ՛ Սարգսեանէն եւ թէ՛ բուն Չուհաճեանէն: Իսկ ձայնակայքը (tonality) Սարգսեանի *ռէ փոքրալար*էն (D minor) փոխադրուած է *տօ փոքրալար* (C minor): Արդ, այստեղ կը ներկայանայ Սարգսեան-Թահմիզեան նոր, հերթական տարբերակ մը:

ԶԳԱԹ-ի Մակար Եկմալեանի դիւանին մէջ, թիւ 51, կը գտնուի երգի եւ դաշնակի *Գարուն*ը, գրուած անյայտ ձեռագիրով: Բացի ձայնակայքէն՝ որ տեղափոխուած է *ֆա փոքրալար* (F

minor), եւ դաշնակի ամենավերջին երեք հատածներէն՝ որոնք դարձած են աւելի «վիրթիւոզ»-ական, երգը ու նուագակցութիւնը ճիշդ *Քնար Հայկական*ին նման են:

Ի վերջոյ, ԶԳԱԹ ԶԴ 123 (ՀԹ 82) կը բովանդակէ անյայտ ձեռագիրով գրուած նուագախումբի առանձին նուագարաններ, որոնք կը ներկայացնեն *Գարուն*ի նուագախումբի փոխադրութիւնը: Ասիկա դաշնակի նուագակցութեան փոխադրութիւնը չէ՝ այլ զուտ նուագախմբային ստեղծագործութիւն մըն է: Կազմըւած է 13 թերթէ, 25.5x33 սմ., գրուած է տուշագիր՝ մատիտագիր սրբագրութիւններով: Կան սխալներ: Զուհաճեանի ձեռագիրէն ոչ մէկ հետք կը գտնուի: Դժուար է զայն ընդունիլ իբրեւ վաւերական-հեղինակային, իսկ տարբերութիւնները *Քնար Հայկական*ին նկատմամբ բաւական շատ են: Գրուած է *մի փոքրալարի* (E minor) մէջ:

Զարմանալիօրէն, հակառակ այս բոլոր մշակում-դաշնակումներուն, Զուհաճեանի բնօրինակը կը մնայ ամենաբնականն ու ամենաարտայայտիչը, որ ունի անմատչելի պարզութիւն, թափանցիկ խորութիւն: Ինքնաբուխ, բնահոս այս երաժշտութեան յետագայ մշակումները ընթացած են նուագակցութեան հիւսուածքի ճոխացումի եւ բարդացումի ուղիով՝ առանց հաշուի առնելու մեղեդիին անպաճոյճ, նրբահրաշ գեղագրութիւնը:

Հանճարեղ Կոմիտաս Վարդապետ՝ ի թիւս այլ փոփոխութիւններու, Ա. տան եղանակը փոխած է հարմոնիք փոքրալարի՝ *սի կիսվար*ները (B flat) փոխարինելով *սի բնական*ներով (B natural): Այսպէս, մուծելով որոշ արեւելականութիւն մը՝ մեղեդին կրնայ հնչել գեղեցիկ, բայց, միեւնոյնն է, Զուհաճեանի բնական փոքրալարի համեմատութեամբ, կը կորսնցնէ իր նախնածին բնականութիւնն ու վտիտ հոսքը: Այս առումով, դժուար է համաձայնիլ ականաւոր երաժշտագէտ-կոմիտասագէտ Ռոպերթ Աթայեանի այն կարծիքին հետ, որ խօսելով *Գարուն*ի Կոմիտաս Վարդապետի մշակումին մասին՝ կը գրէ հետեւեալը.

«Հանրայայտ դարձած այս մեղեդին [իմա՝ Զուհաճեանի *Գարուն*ի միաձայն մեղեդին, Հ. Ա.] Կոմիտասի խմբերգային մշակման մէջ բաւականին փոփոխուած է. զանազան հատուածներում այն՝ խմբագրուել է ի հաշիւ տիպիկ եւրոպական ինտոնացիաներից կազմուած դարձուածքների պակասեցման, առաջին պարբերութեան աւարտը լադային շեղում է ստացել, ամբողջապէս դուրս է մնացել 2-րդ տան խօսքերով երգուող հարաչարային հատուածը: Այդ փոփոխութիւնների շնորհիւ մեղեդիի ձեւը դարձել է ամփոփ, նրանում երեւան են եկել լադային փոփոխականութեան գունեղ երանգներ, որոնք հնարաւորութիւն են տուել ստեղծելու նոյնքան գունեղ ներդաշնակութիւն»[19]:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ԶԳԱԹ, Մարգարիտ Բաբայեանի Դիւան, թիւ 581ա:

### ԱՌ ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒ

Խօսք՝ Ներսէս Մեզպուրեան

Երաժշտութեան հեղինակակից՝ Գաբրիէլ Երանեան

Տպագրուած է *Քնար Հայկական*ին մէջ, Կ. Պոլիս, 30 Մայիս 1862, Բ. շրջան, թիւ 2:

Բանաստեղծութեան հեղինակը յիշատակուած չէ, այլ փոխարէնը գրուած՝ «Երգ ազգային»: Ըստ Ռ. Աթայեանին, նոյն երգի Կոմիտաս Վարդապետի մշակած տարբերակի ձեռագիրը եւս չունի բանաստեղծութեան հեղինակի նշում[20]: Բայց քանի որ «սովորաբար խօսքերի հեղինակութիւնը վերագրւում է Ն. Մեզպուրեանին», Աթայեան կը հետեւի այս վերագրումին[21]: Ներկայ հրատարակութեանս համար եւս պատշաճ դատեցի ընդունիլ նոյն աւանդութիւնը:

Նշուած չէ մեներգ թէ խմբերգ ըլլալը: Կրկներգին սկիզբը՝ «Իմ մայրենի քաղցր լեզու», Ճիուզեփփէ Ճորտանիի (Giuseppe Giordani) հանրայայտ *Caro mio ben* մեներգի ելեւէջային կրկնօրինակումն է, որ կ'ենթադրէ մեներգիչի յախուռն, զօռ ձայն:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ԶԳԱԹ, Մարգարիտ Բաբայեանի Դիւան, թիւ 581ա եւ Երգարաններու Դիւան, թիւ 75:

### ԵՐԳ ԹԱՏԵՐԱԿԱՆ. ՕՆ ՄԵՐ ՆԱԽՆԻ

Խօսք՝ Գարեգին Զափրաստճեան

Տպագրուած է *Քնար Հայկական*ին մէջ, Կ. Պոլիս, 31 Յունիս 1862, Բ. շրջան, թիւ 3:

Գարեգին Զափրաստճեանի, Սերովբէ Պէնկլեանի, Մարտիրոս Մնակեանի եւ այլոց ջանքերով 1859-ին կը հիմնուի Խասգիւղի Թատրոնը[22]: Աբրահամ Այվազեան կը գրէ՝ թէ Գ. Զափրաստճեան «ի Խասգիւղ անդրանիկ Հայ-Թատրոնին առաջին ներկայացուցման համար՝ 1859-ին, դաշնակի վրայ *Օն մեր նախնի զարուց* նախերգանքը ոգած եւ հրատարակած է»[23]: 1868-ին, Մ. Միհանսարեանց՝ Ս. Փեթերսպուրկի *Քնար*

*Հայկական* երգարանին մէջ հրատարակած է *Օն մեր նախնի*ին բառերը, անհասկնալիօրէն զանց առնելով բանաստեղծութեան առաջին տողերը, բայց դնելով խօսուն խորագիր մը՝ «Դաշնակ. յառաջին ներկայացուցման Հայկեան Թատրոնին որ ի Խասգիւղ»[24]: Հետաքրքրական է՝ որ երկու աղբիւրներն ալ ստեղծագործութիւնը դաշնակի համար յօրինուած կը նկատեն: Գ. Ստեփանեան՝ հիմնուելով Վահան Զարդարեանի վկայութեան վրայ, դիտել կու տայ՝ որ Խասգիւղի Թատրոնի բացումին ժամանակ, Թատերախումբին «երաժշտապետ»-ը եղած է Զուհաճեան[25]: Այս բոլորին աւելցնելով Պոլսոյ *Քնար Հայկական*ի յիշեալ հրատարակութիւնը՝ ուր բանաստեղծին եւ երաժշտահանին անունները կը յիշատակուին Զափրաստճեան եւ Զուհաճեան, յստակ կը դառնայ՝ որ *Օն մեր նախնի*ն յօրինուած է Խասգիւղի Թատրոնի անդրանիկ ներկայացումին համար, 1859-ին, իբրեւ երգ: Իսկ վերոյիշեալ «դաշնակ»-ի վերագրումները պարզ անուշադրութեան արդիւնքը կրնան ըլլալ:

1907 Յունուար 17-ին, իբրեւ խմբերգ ան կը հնչէ Գահիրէի Սալ Սենտիքային մէջ, Հայ Յեղափոխական Դաշնակցութեան Կարմիր Խաչի Հայուհեաց Միութեան կազմակերպած ընտանեկան երեկոյթին[26]:

Նշուած չէ մեներգ թէ խմբերգ ըլլալը: Իր խրոխտ տրամադրութեամբ եւ աշխոյժ կշռոյթով կը մօտենայ խմբերգային հնչականութեան:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ԶԳԱԹ, Մարգարիտ Բաբայեանի Դիւան, Թիւ 581ա եւ Երգարաններու Դիւան, Թիւ 75:

**ԼՈՌԱ**

Խօսք՝ Վիքթոր Հիւկօ

Թարգմանութիւն՝ Օննիկ Երկանեան

Տպագրուած է Եղիա Տնտեսեանի *Նուագք Հայկականք* երաժշտական հանդէսին մէջ, Կ. Պոլիս, 1880, Ա. շրջան, Թիւ 8-9:

Նշուած չէ մեներգ թէ խմբերգ ըլլալը: Պէտք է ըլլայ մեներգ: Զուհաճեան յօրինած է նաեւ *Լոռա*յին ֆրանսերէն տարբերակը՝ *Laura* (*տե՛ս* ստորեւ), որուն տպագրուած օրինակին մէջ նշանակուած է ձայնատեսակը՝ «մեծծօ-սոփրանոյի կամ պարիթոնի համար»: Հայերէն *Լոռա*յին ձայնամասը նման է ֆրանսերէնին, որով ան նոյնպէս նախատեսուած պէտք է ըլլայ մեծծօ-սոփրանոյի կամ պարիթոնի համար:

Յօրինուած է Վիքթոր Հիւկոյի *Laura* բանաստեղծութեան վրայ: Հայերէն թարգմանութիւնը կատարած է Գրիգոր Օտեանի քրոջ որդին՝ Օննիկ Երկանեան[27]:

Ընթացքի ցուցիչը (tempo) նշանակուած չէ:

Յետագային, Զուհաճեան այս երգին երաժշտութիւնը ընդլայնելով պատշաճեցուցած է *Չէմիրէ* օփերայի Բ. արարի Չէմիրէ-Ռեպիաէպուտիա եռերգին:

Հայերէն եւ ֆրանսերէն *Լոռա*ներուն միջեւ կան որոշ տարբերութիւններ: Ֆրանսերէն *Laura*-ն շատ մը կողմերով աւելի մօտ է *Չէմիրէ*ի մէջ օգտագործուած տարբերակին: Եւ քանի որ *Չէմիրէ*ն յղացուած է 1880-ականներու վերջաւորութեան, ուրեմն ֆրանսերէն *Laura*-ն յօրինուած պէտք է ըլլայ հայերէն տարբերակէն ետք:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ԶԳԱԹ ԶԴ, Թիւ 183:

**ԳՈՀԱՐԻԿ**

Խօսք՝ Մկրտիչ Պէշիկթաշլեան

Տպագրուած է Պոլիս, անթուակիր:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ Փարիզի Նուպարեան Մատենադարան, Թիւ 19380:

**ՄԱՀԱՆՈՒԱԳ**

Խօսք՝ Անյայտ

Հիմնականը յօրինուած է մենանուագ դաշնակի համար: Դաշնակի հրատարակութեան կցուած է առանձին թերթ մը՝ որ կը բովանդակէ մեներգի եւ երկձայն երգչախումբի երգամասը: Բանաստեղծութեան հեղինակին անունը յիշատակուած չէ:

Ունի հայերէն լեզուով հետեւեալ խորագիրը. «Արտօսր ի շիրիմ Տ. Տ. Մեծին Ներսէսի երիցս երանեալ հայրապետին եւ Թուրքիոյ հայոց պատրիարքին. Մահանուագ»:

Նախատեսուած է իբրեւ «խմբերգ յերկձայն»՝ առանց նշելու ձայները: Հաւանաբար գրուած ըլլայ սոփրանօ-ալթոյի համար: Նոյն երգին մէջ հատածներ 45-57-ին վրայ նշուած է՝ «առանձինն», այսինքն՝ մեներգ: Պէտք է ըլլայ սոփրանօ կամ թենոր:

Յօրինուած է Թրքահայոց պատրիարք Տ. Ներսէս Վարժապետեանի վախճանումին առիթով: 1884-ին, Գէորգ Դ. Կաթողիկոսի վախճանումէն ետք, Ն. Վարժապետեան կ'ընտրուի Ամենայն Հայոց Կաթողիկոս, բայց անժամանակ մահը կը խափանէ ստանձնելու իր պաշտօնը[28]: Ան եղած է լայն ժողովրդականութիւն

վայելող պատրիարք: Իր Թաղումի արարողութիւնը կը կատարուի մեծ շուքով եւ համաժողովրդական սուգով:

Հայրենի սիրով տոգորուած Չուհաճեան՝ ինչպէս ողջ Թրքահայութիւնը, եղելութեան կ'արձագանգէ՝ յօրինելով այս յուղիչ Մահանուագը (Սգոյ Քայլերգ), որ կը տպագրուի 1884-ին[29]:

Ահաւասիկ *Արեւելքի* մեկնաբանութիւնը. «Ազգային երաժշտապետ Տիգրան էֆէնտի Չուհաճեան, ըստ օրինակի բազմաթիւ անձանց եւ ազգային ընկերութեանց որք ծաղկեաց պսակներ եւ փունջեր սփռեցին յոտս դագաղին երջանկայիշատակ Ներսէս Պատրիարքին, *Արտօսր ի շիրիմ* տիտղոսով եղերերգ մը յօրինած է ի յիշատակ ողբացեալ Պատրիարքին. այս եղերերգ, զոր հեղինակը *Մահանուագ* կը կոչէ, տխուր հառաչանք մ'է երաժշտական նշանագրերու մէջ ամփոփուած. եղանակը խորին եւ վշտահրաւէր ձայնիւ մը կը սկսի, սակաւ ինչ յետոյ կը բարձրանայ եւ իբր յուսահատական ճիչ մ'արձակելով կը խոնարհի դարձեալ եւ կը խորասուզուի. քաջահմուտ հեղինակը ճիշդ օրինակած է սգազգած սրտին ելեւէջը: Սոյն ընտիր հեղինակութիւնն որ առայժմ դաշնակի համար գրուած է եւ որ երաժշտութեան տեղեակ անձանց լիուլի գոհունակութիւն եւ ներբողից արժանացած է, քանի մ'օրէն հրապարակ պիտի ելնէ, զի արդէն մամլոյ ներքեւ է նոյն իսկ Կ. Պոլսոյ մէջ, Բերա Թէքէ-Ճատտէսի թիւ 506 Նօթաճի հաճի էմէն էֆէնտիի տպարանը»[30]:

Ղազարոս քահ. Յովսէփեան կը գրէ հետեւեալը. «Երջանկայիշատակ Տ. Ներսէս Վարժապետեան պատրիարքի յուղարկաւորութեան տխուր հանդէսը ո՛չ մի օրագիր այնպէս նկարագրած չէ, ո՛չ մի ճարտարախօս լեզու այնպէս պատմած չէ, ինչպէս որ տաղանդաւոր երաժիշտ Տ. Չուհաճեանը ներկայացնում է այդ հանդէսը չորս երեսից բաղկացած իւր հիւսած մահանուագով, որի սիրտ յուզող եղանակը, մինչեւ անգամ քարասիրտ մարդոց աչքերից արցունք քամելու ոյժ ունի»[31]:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ 188 (ՀԹ 136):

## ԱՌ ՍԷՐ ԻՄ ՀԱՅԱՍՏԱՆ

Խօսք՝ Ստեփան Փափազեանց
Եղանակ՝ Մանաս էֆէնտի
Մշակում՝ Տ. Չուհաճեան

Տպագրուած է *Քնար հայկականին* մէջ, Կ. Պոլիս, 1 Դեկտեմբեր 1861, Ա. շրջան, թիւ 7: Գրուած է՝ «Բիանօյի կարգադրիչ Տիգրան Չուխաճեան», որ կը համապատասխանէ ժամանակակից «մշակում» հասկացութեան:

Հատած 4-ի կէսին կը փակուի կրկնութեան նշանը, այսինքն՝ Ներածութիւնը պէտք է կրկնուի երկու անգամ: Երգին ամենավերջը՝ հատած 30-ին կը փակուի ուրիշ կրկնութեան նշան մը՝ որուն սկիզբը յայտնի չէ: Երաժշտականօրէն Ներածութեան կրկնութիւնը անտրամաբանական է ու կը կասեցնէ շարունակական ընթացքը: Կը կարծեմ՝ որ տպագրական անուշադրութեան արդիւնքը ըլլայ: Իսկ ամենավերջին կրկնութիւնը աւելորդ է, քանի որ ինքն ըստ ինքեան երգը պէտք է կրկնուի երկու անգամ՝ ըստ բանաստեղծութեան երկու տուներուն:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ, Երգարաններու Դիւան, թիւ 75:

# ՄԵՆԵՐԳՆԵՐ ԵՒ ԽՄԲԵՐԳՆԵՐ ՕՏԱՐ ԽՕՍՔԵՐՈՎ

## LAURA

Խօսք՝ Վիքթոր Հիւկօ (ֆրանսերէն)

Տպագրուած է Փարիզ, 1914-ին, հրատարակիչ՝ Լեւոն Համբարձումեան: Ոչ մէկ նշում կայ օգտագործուած աղբիւրին մասին:

Մեներգին ֆրանսերէն եւ հայերէն տարբերակներուն մասին տե՛ս հայերէն *Լոռային* ծանօթագրութիւնները:

ՉԳԱԹ ՉԴ-ին մէջ կը պահուի ֆրանսերէն *Laura*-յի ինքնագիր ուրուագիր մէկ թերթ մը՝ ՉԳԱԹ ՉԴ 97 (ՀԹ 133ա): Ամբողջական ձեռագիրը չկայ:

1994 Յուլիս 6-ին, Գահիրէի Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ, Չուհաճեանի օտար լեզուներով յօրինած մեներգներու կատարումով ելոյթ կ'ունենայ Հալա էլ-Ծապուրի[32], որ կը մեկնաբանէ նաեւ *Laura*-ն, դաշնակի նուագակցութեամբ Հ. Աւագեանի[33]:

Հրատարակութեանս աղբիւրն է՝ Փարիզի Նուպարեան Մատենադարան:

## AVE MARIA

Առաջին անգամ տպագրուած է 1883-ին, Պոլիս: Այս առիթով հետեւեալը կը գրէ *Մասիս*.

«Տիգրան էֆէնտի Չուխաճեան Հայ արուեստագէտն որ իւր օբէրաներով եւ բազմաթիւ երաժշտական գործերով հանրածանօթ եղած է իբրեւ նշանաւոր երաժշտապետ, իւր ճարտարութեան մէկ նոր փորձը ցոյց տուաւ եկեղեցական երգով մը, *Աւէ Մարիա* (Ողջոյն քեզ Մարիամ), որ Պոլսոյ բոլոր արուեստագիտաց կողմէն կը գնահատուի իբրեւ ընտիր գործ մը, ուր ճարտարութիւն եւ արուեստ՝ քաղցրութեան եւ փափկութեան հետ միանալով՝ վեհ աղօթք մ՚ըրած են զայն:

«Տիգրան էֆէնտի Չուխաճեան իւր տաղանդովն եւ հմտութեամբ մեծ պատիւ կը բերէ մեր ազգին, եւ Հայոց յամենայնի ընդունակութեան եւ ճարտարութեան մի կենդանի ապացոյցն է Եւրոպիոյ առջեւ, որ չվարանիր խոստովանիլ թէ հանճարեղ երաժշտապետ մ՚է»[34]:

Երկրորդ անգամ կը տպագրուի 1914-ին, Լեւոն Համբարձումեանի ջանքերով: Պաքուի *Թատրոն եւ երաժշտութիւն* հանդէսի թղթակիցը իրաւացիօրէն դիտել կու տայ՝ թէ «ո՜րչափ գնահատելի եւ արժէքաւոր է պարոնի [իմա՝ Լ. Համբարձումեանի, Հ. Ա.] ձեռնարկութիւնը»[35]: Այս երկրորդ տպագրութիւնն է՝ որ հիմք ծառայած է ներկայ հրատարակութեան, քանզի անկարելի եղաւ գտնել առաջին պոլսական հրատարակութիւնը:

Այս երկու հրատարակութիւնները կը ներկայացնեն Ave Maria-ի Բ. տարբերակը: ՁԴ-ին մէջ կը գտնուի Ա. տարբերակը՝ գրուած նուագախումբի նուագակցութեամբ, ինչպէս նաեւ Բ. տարբերակի փոխադրութիւնը ջութակ-դաշնակի համար[36]:

ՁԳԱԹ ՁԴ-ի ձեռագիր նիւթեր ցոյց կու տան՝ թէ Ave Maria-ն առ նուազն մէկ անգամ կատարուած է Չուհաճեանի կենդանութեան, հաւանաբար՝ հեղինակին ղեկավարութեամբ[37], թէեւ յայտնի չէ թէ երբ եւ ուր:

Բաց աստի, 1880 Ապրիլ 3/15-ին, Թիֆլիսի Ամառնային Թատրոնին մէջ, Թրքահայ սովեալներուն ի նպաստ տրուած նուագահանդէսին, Սիրանոյշ ծրագրած էր երգել Ave Maria-ն[38], սակայն վերջին պահուն զայն կը փոխարինէ Թիֆլիսահայ երաժշտահան Գ. Ղորղանեանի ռոմանսով մը, հաւանաբար յարգած ըլլալու համար ընիկ հասարակութիւնը, մանաւանդ որ նոյն յայտագիրին մէջ նուագախումբը պիտի կատարէր Չուհաճեանի այլ ստեղծագործութիւն մը[39]: Հաւանաբար, Սիրանոյշ այլ առիթներու կատարած ըլլայ զայն:

Կը յիշատակուի՝ թէ Յարութիւն Սինանեան իր նուագախումբով կատարած է զայն[40], որուն ժամանակն ու վայրը նոյնպէս կը մնան անյայտ:

1917-ին կը մեկնաբանուի Ֆրանսայի Լա Ռոշէլ քաղաքի եկեղեցիին մէջ[41]:

1994 Յուլիս 6-ին, Գահիրէի Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ զայն կը մեկնաբանէ Հալա էլ-Ճապուրի[42]:

Այնուհետեւ, 1997 Դեկտեմբեր 30-ին, Գահիրէի Օփերայի Փոքր Սրահին մէջ, եգիպտացի մեներգիչներու երգահանդէսին՝ Հալա էլ-Ճապուրի կրկին կը մեկնաբանէ զայն, մեծ հետաքրքրութիւն առաջացնելով ունկնդիրներուն մօտ[43]: Երգչուհիին կը նուագակցէր Մայա Կվինէրիա[44]:

1999 Յունուար 5-ին, Փարիզի ՀԲԸՄ Ալեք Մանուկեան Մշակութային Կեդրոնին մէջ, խթումի հանդիսութեան, ճափոնցի արուեստագիտուհիներ՝ թաւ ջութակահարուհի Այա Սաքաքիպարա[45] եւ դաշնակահարուհի Մասաքօ Ճիմուրա[46] «փառաւոր կերպով» կը նուագեն Ave Maria-ն[47]:

2004 Դեկտեմբեր 15-ին (երեկոյեան) եւ 17-ին (ցերեկային եւ երեկոյեան), ան երեք անգամ կը հնչէ Գահիրէի Օփերայի Մեծ Սրահին մէջ՝ նուագախումբի նուագակցութեամբ: Մեներգչուհին էր Հալա էլ-Ճապուրի, որուն կը նուագակցէր Նայէր Նակիի[48] ղեկավարութեամբ Գահիրէի Օփերայի Նուագախումբը[49]: Կատարումը տեղի ունեցաւ ըստ 2000-ին Գահիրէի մէջ տպագրուած նուագագրութեան[50]:

1995-ին, Էլլադա Չախոյեան կը ձայնագրէ խտասալիկի վրայ, երգեհոնի նուագակցութեամբ Ռուբէն Այվազեանի (Leonarda LE 341): Խտասալիկի տիտղոսաթերթին վրայ երգչուհիին ձայնատեսակը նշուած է՝ տռամաթիք-քոլորաթուրա սոփրանօ, մինչ ստեղծագործութիւնը նախատեսուած է մեծծօ-սոփրանոյի համար:

Հրատարակութեանս համար հիմք հանդիսացող 1914-ի Փարիզի հրատարակութեան աղբիւրն է՝ Փարիզի Նուպարեան Մատենադարան, թիւ 19429:

## MÉLODIE [No. 1]

Խօսք՝ Անյայտ (յունարէն)

Յունարէն մեներգ՝ գրուած լատիներէն տա-

ներով: Բանաստեղծին անունը չկայ:

Մնացած է անտիպ: Ձեռագիրը հետեւեալն է.

**ՁԳԱԹ ՁԳ**, թիւ 100 (ՀԹ 62): Խորագիր՝ Mélodie: Հեղինակ՝ D. Tchouhadjian: Երաժշտական կազմ՝ մեներգ-դաշնակ: Թուական՝ անթըւակիր: Թերթ՝ 4: Գրիչ՝ Տ. Ջուհաճեան: Գրչատեսակ՝ տուշագիր, մատիտագիր սրբագրութիւններով: Մեծութիւն՝ 26x33 սմ.:

Զայնատեսակը հեղինակին կողմէ նշուած է՝ "pour Mezzo Soprano ou Baryton avec accompagnement de piano" (մեծծօ-սոփրանոյի կամ պարիթոնի համար՝ դաշնակի նուագակցութեամբ):

Նոյն բանաստեղծութեամբ կը գտնուի ուրիշ մեներգ մը եւս (*տե՛ս* յաջորդ երգը): Զանազանութեան համար իմ կողմէս աւելցուցի Թիւ 1 (No. 1) եւ Թիւ 2 (No. 2):

Կատարուած է 1994 Յուլիս 6-ին, Գահիրէի Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ, Հալա Էլ-Շապուրիի մեկնաբանութեամբ[51]:

## [MÉLODIE No. 2]

Խօսք՝ Անյայտ (յունարէն)

Յունարէն մեներգ՝ գրուած լատիներէն տառերով: Ունի նախորդ երգին բանաստեղծութիւնը: Բանաստեղծին անունը նոյնպէս չկայ:

Մնացած է անտիպ: Ձեռագիրը հետեւեալն է.

**ՁԳԱԹ ՁԳ**, թիւ 99 (ՀԹ 63): Խորագիր՝ նշուած չէ: Հեղինակ՝ նշուած չէ: Երաժշտական կազմ՝ մեներգ-դաշնակ: Թուական՝ անթուակիր: Թերթ՝ 3: Գրիչ՝ Տ. Ջուհաճեան: Գրչատեսակ՝ տուշագիր: Մեծութիւն՝ 26x33 սմ.:

Հետեւելով նախորդ երգին՝ զայն անուանեցի *Mélodie*:

Զայնատեսակը նշուած չէ՝ բայց երգչային ձայնամասին նմանութիւնը նախորդին հետ կ'ենթադրէ նոյն ձայներուն գոյութիւնը:

Կատարուած է 1994 Յուլիս 6-ին, Գահիրէի Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ, Հալա Էլ-Շապուրիի մեկնաբանութեամբ[52]:

Երկու յունարէն երգերուն բառերը հրատարակութեանս համար խմբագրեցին Գահիրէի յունարէն լրագիրին խմբագիրները:

## ՄԻՀՐԻ ԱՏԼՈՒ

Խօսք՝ Անյայտ (թուրքերէն)

Փառաբանութիւն մըն է օսմանեան կայսրին: Պէ՞տք է արդեօք հրապարակել բոնակալներու նուիրուած ձօներգներ: Կարծիքները կը տարբերին: Խաչատրեանի, Փրոքոֆիեւի ստեղծագործութիւնները՝ նուիրուած Ստալինին, ինքնաբուխ արտայայտութիւննե՞ր են թէ իշխանութիւններուն կողմէ պարտադրուած յօրինումներ: Բայց հարցը աւելի լաւ կ'ըլլայ դիտել ուրիշ տեսանկիւնէ: Երբ արդէն այդ իշխանութիւնները վերացած են, տուեալ ստեղծագործութիւնները այսօրուան դիտանկիւնէն կը ներկայացնե՞ն երաժշտական-գեղարուեստական արժէքներ թէ ոչ, եւ ի՞նչ չափով անոնց երգերուն փառաբանական բառերը կը խանգարեն կամ կը նպաստեն երաժշտութեան ընկալումին: Փրոքոֆիեւի մահուան յիսնամեակն ու Խաչատրեանի ծննդեան հարիւրամեակը կատարողական գործադրութեան տեսանկիւնէն ցոյց տուին՝ որ նման ստեղծագործութիւններ կրնան գեղարուեստական գեղեցիկ յոյզեր առաջացնել ունկնդիրներուն մօտ, առանց նաեւ հակակրանքի մտորումներ առաջ բերելու երաժշտա-քննադատներու մօտ:

Հայերուս համար հարցը ուրիշ գունաւորում կը ստանայ երբ փառաբանուողը կ'ըլլայ օսմանեան բռնատիրութիւնը, քանզի այստեղ կայ հրէշային ջարդ, կարմիր եղեռն:

Այսօր ոչ մէկ իսկական հայ կրնայ ընդունիլ իրեն ջարդած բռնապետին փառաբանումը: Բայց ԺԹ. դարու վերջաւորութեան եւ Ի. դարու սկզբնաւորութեան կարելի՞ էր որ թրքահայ արուեստագէտ մը գոյատեւէր առանց իր տիրակալի գովաբանութեան:

Ուրեմն, պարզապէս անտեսե՞լ նման գործեր: Կարելի է: Բայց կարելի է նաեւ ի յայտ բերել զանոնք եւ բանական-առարկայական մօտեցումով ցոյց տալ անոնց գոյութեան անհրաժեշտութիւնը տուեալ ժամանակաշրջանին եւ բնաբանին մէջ: Մասնագիտական երաժշտութեան եւ երաժշտական թատրոնի հիմնադիրը ողջ մերձաւոր արեւելեան մակարդակով, Ջուհաճեան այլընտրանք չունէր քան դիմել միապետին գովաբանութեան: Թուրքերը նպատակ դրած էին ճնշել եւ ապա ոչնչացնել ժողովուրդ մը, որ իրենց տուած էր բարձր երաժշտութիւն, թատրոն, ճարտարապետութիւն, եւլն.:

Մեծ, երկար ու արիւնոտ ճանապարհ մը կը բաժնէ *Գարուն* մը՝ *Միհրի ատլու*էն, իսկ վերջինին կարելի էր հասնիլ միայն ճնշումներու դառնութիւնը ճաշակելէ ետք:

Խմբերգին ձեռագիրը հետեւեալն է.

ԶԳԱԹ ԶԴ, թիւ՝ 98 (ՀԹ 61)։ Խորագիր՝ նշուած չէ։ Հեղինակ՝ Տ. Չուհաճեան։ Երաժըշտական կազմ՝ եռաձայն խմբերգ դաշնակի նուագակցութեամբ։ Թուական՝ անթուակիր։ Թերթ՝ 2։ Գրիչ՝ Տ. Չուհաճեան։ Գրչատեսակ՝ տուշագիր։ Մեծութիւն՝ 26.5x34.2 սմ.։

Խորագիրը աւելցուցի իմ կողմէս, վերցնելով երգին առաջին բառերը։

## ԱՅԼ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ

Չուհաճեանի մեներգային-խմբերգային ժառանգութիւնը շատ աւելի լայն է՝ քան վերոյիշեալները։

*Քնար Հայկականի*ին մէջ լոյս տեսած է *Մայր առ որորան* մեներգը, խօսք՝ Մ. Մամուրեան, երաժշտութիւն՝ Տ. Չուհաճեան։ Այս երգին մատչելի միակ օրինակը կը գտնուի ԶԳԱԹ, Մարգարիտ Բաբայեանի Դիւան, թիւ 581ա։ Դժբախտաբար, երեք էջէ բաղկացած երգին երրորդ էջը չկայ դիւանին մէջ։

Յօրինած է *Բաժակ ողջունի* երգը՝ որ կը կատարուի 1862 Մայիս 12/24-ին, Բերայի Թատրոն Նաումին մէջ, Թովմաս Թէրզեանի *Սանդուխտ* ողբերգութեան բեմադրութենէն առաջ[53]։

1887-ին Պոլսոյ մէջ կը տպագրուի Ալֆրէտ տը Միւսէի բանաստեղծութեան վրայ յօրինած *Rappelle-toi* ֆրանսերէն ռոմանսը[54]։

1889 Մայիս 7/19-ին, Պոլսոյ Թեւթոնիա սրահին մէջ, Չուհաճեան կը կազմակերպէ նուագահանդէս մը՝ որ կ'արձանագրէ բացառիկ յաջողութիւն։ Նուագահանդէսի վերջինթեր գործը *Rappelle-toi*-ն էր, «զոր երգեց Երուանդ էֆ. Օգոստինոսեան այնպիսի զգայուն ձայնով ու չեչտերով որ ցունց տուաւ հոգիներուն եւ այդ աննման երգի բոլոր մելամաղձութիւնը սրտերու մէջ անցուց», կը գրէ Տիգրան Արփիարեան[55]։ Ուրիշ անստորագիր խանդավառ հանդիսատես մը կը գրէ՝ թէ մեծ յաջողութիւն «ունեցաւ վարպետին *Յիշեա'*ն (Rappelle-toi)։ Ծանօթ է ամէնուն Ժոռժ Ռիւբէսի եղանակն Ալֆրէտ տը Միւսէի բառերուն վրայ, բանաստեղծութեանը նման սիրամնջիկ մելամաղձիկ եղանակ մը. ա'յնքան այդ եղանակն ու այդ բառերը միաքայլ խառնուած են յիրեար որ դժուարին էր երեւակայել Միւսէի տաղն երգուած տարբեր եղանակով. Չուխաճեան յաղթած է այդ դժուարութեան, եւ իւր *Rappelle-toi*-ն, Պ. Օգոստինոսեանի թրթռուն հոգեղորդ ձայնովն երգուած, յուզեց ունկնդրաց սրտերն առաւել տխուր, առաւել գորովական, առաւել սարսուռն բացատրութիւն մը տալով բանաստեղծին զգացմանց»[56]։

1889 Նոյեմբեր 26/Դեկտեմբեր 8-ին, Բերայի Նոր Թատրոնին մէջ, Խասգիւղի Ներսիսեան Վարժարանին ի նպաստ կը կազմակերպուի թատերական ներկայացում մը, որուն երրորդ միջնարարին Սիրանոյշ կը մեներգէ Չուհաճեանէն երեք երգ՝ երեք լեզուներով, որոնք «անոյշ մեղեդիի մը պէս կը սահէին իր շրթներէն ու ցանց կը հանէին բոլորին սրտերը. *Սոխակը* մանաւանդ, այնքա՜ն խոր տպաւորութիւն ըրաւ, որ որոտընդոստ ծափահարութիւնք պահ մը երգչուհւոյն ու նուագարանաց ձայներուն ալ յաղթեցին», կը գրէ Տիգրան Արփիարեան[57]։ Միւս երկու երգերուն անունները չկան։ Սիրանոյշին կը նուագակցէր Չուհաճեան։ Յստակ չէ՝ թէ նուագակցութիւնը դաշնա՞կ էր թէ նուագախումբ։ Մէկ տեղ մը յօդուածագիրը կը գրէ՝ թէ «Չուխաճեան էֆէնտի բազմեցաւ երաժըշտապետի աթոռին վրայ, դաշնակին առջեւ», ուրիշ տեղ մը՝ թէ «որոտընդոստ ծափահարութիւնք պահ մը երգչուհւոյն ու *նուագարանաց* ձայներուն ալ յաղթեցին» (ընդգծումը իմս է, Հ. Ա.)։

Իսկ Ճարասան կը յիշատակէ Սիրանոյշին նուիրուած *Թռչնիկ* մեներգը։ Ան կը գրէ՝ թէ 1870-71 թուականներուն, «Յակոբ պէյ Պալեանի ականջը հասաւ Սիրանոյշի վճիտ ու մելանուշ ձայնին համբաւը. թատերասէր պէյը *Թռչնիկ* անունով բանաստեղծութիւն մը գրեց եւ յանձնարարեց Տ. Չուհաճեանին որպէսզի եղանակ մը գրէ անոր։ Այդ երգը Սիրանոյշ այնքան հիանալի երգեց որ Յակոբ պէյ տասն ոսկի նուէր տուաւ իրեն»[58]։ Կրնա՞յ ըլլալ *Սոխակն* ու *Թռչնիկը* նոյն երգերն են։

1897 Յունուար 12/24-ին, Զմիւռնիայի Ս. Հռիփսիմեան Վարժարանին մէջ, Չուհաճեան կը կազմակերպէ թատերախառն նուագահանդէս մը, ուր մեծծօ-սոփրանօ Թ. Յովսէփեան կը մեներգէ Չուհաճեանի «գողտրիկ մրմունջը (romance)՝ ձօնեալ առ Ազն. Տիկին Գ. Եսայեան», դաշնակի նուագակցութեամբ երաժըշտահանին[59]։

Երաժշտահանի մահազդին մէջ, *Արեւելեան*

